

1917 № 5—Փետրուարի 5 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։ Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար Թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։



Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Խորհուրդը յայտնում է թէ կիրակի, փետրուարի 5-ին, Վերայի գերեզմանատանը նշանակուած է հանգուցեալ բարերար

**ՆԻԿՈՂԱՅՈՍ ԳՐԻԳՈՐԵԱՆ ՄԻՐԻՄԱՆԵԱՆԻ**

հոգեհանգիստը և արձանի բացումը։ Պատարագի սկիզբն է առաւ. ժամը 11-ին։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՀԱՅԱՆՊԱՍՏ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ ԵՒ ԱՄԵՐԻԿԱՅՈՒՄ

*Անգլիան եւ Հայաստանը.*—Անկասկած կրօնական վերազարթման մի շրջան է ապրում Անգլիան. Թէ Անգլիքան պետական եկեղեցին և թէ ազատ Նոն-կոնֆորմիստ եկեղեցինները մղում են ուժեղ պրոպագանդա վերակենդանացնելու քրիստոնէութեան ոգին և անցեալ դարերի կրօնական խանդավառութիւնը։ Սոսկումների, զոհերի և անձնական կորուստների կսկիծներով ցօղուած այս երկիրը ոչ մի ժամանակ աւելի ընդունակ չէր եղել համաշխար

հայրին աղէտի բոլոր սարսափներին էապէս մասնակցելու ինչպէս այժմ։ Ոչ մի ժամանակ անգլիացիք չէին եղել աւելի ընդունակ հոգեկան սփոփանք որոնելու կրօնական երկիւղածութեան մէջ քան այժմ։ Քրիստոնէական կրօնի այս վեհ շրջանին՝ Ծննդեան տօներին հոգեկան այդ յեղաշրջման ակներև արտայայտութիւնները հնչւում էին Լօնդոնի Ս. Պօղոսի հսկայական կաթուղիկէից մինչև թեմական ամենապարզ ու անշուք մատուռը, ուր յայտնի և պերճախօս հոգևորականներ ուշագրաւ քարոզներով դիմում էին անում իրենց հօտին երևակայել հորիզոններից անդին տառապող քրիստոնեաների դրութիւնը։

Այդ դիմումների մէջ, ի հարկէ, իբր առանձնայատուկ ողբերգական ու պատմական պայմաններով առաջին տեղը գրաւում է Հայաստանի նահատակութիւնը։ Ականջալուր անձեր պատմում են, որ քարոզիչ հոգևորականները գրեթէ բոլոր աղօթատներում մատնանիշ են անում հայկական կոտորածները՝ որպէս քրիստոնէութեան հաւատարիմ զոհերի կրած տառապանքները։ Շատ եկեղեցիներում նորերս հրատարակուած «Հայկական կապոյտ գրքից» կարդացուել են ամբողջ էջեր, որոնց տալիս են թիւրքական դիւականութեան ըմբոստացնող մանրամասներ։

Այս ընդհանուր ոգևորութեան մէջ մի աններդաշնակ նօթ այն ձգտումն է, որով պատասխանատու հոգևորականներ փորձ են անում պատասխանատուութիւնը թիւրքերից աւելի բարդել գերմանացիների վրայ՝ ի հարկէ, որոշ հեռաւոր նկատումներով։

*«Times» և թիւրք վկայութիւններ.*— «Թայմզ», որ Լլոյդ Ջորջի կառավարութեան դեկը ստանձնելուց ի վեր, ստացել է գերակշիռ ազդեցութիւն, իր յունուար 1 թուի մէջ տպում է թիւրք ականատես վկաների յայտարարութիւններ՝ Բիթլիսի, Սղերդի, Մշոյ, Էրզրումի և Երզնկայի մէջ թիւրքերի գործած անլուր գազանութիւնների մասին։ Թիւրքական այդ վկայութիւնները էութեամբ հաստատում են «Հայկական կապոյտ գրքի» հայկական և օտար աղբիւրներից հաղորդուած մանրամասները։ Այդ ի հարկէ, ծիծաղելի դրութեան է մատնում Շւէյցարիայում թիւրք պետական ագենտների փորձերը՝ հերքելու իրենց գազանութիւնների հետքերը և ընդհակառակը, պատասխանատուութիւնը հայերի վրայ բարձելու ճիգերը։

*Անգլիական պարլամենտում.*—«Հայկական կապոյտ գրքի» հրատարակութեան առիթով Լորդ-Մէրի հայկական ֆոնդի նախագահը պ. Անիւրին Ուիլլըմս և պ. Օ՛Կօնօր դեկտ. 21-ին պարլամենտում հարցրին արտաքին գործերի մինիստրութեան քարտուղար լորդ Ռոպերտ Սէսիլից Միջագետքում գտնուող հայերի այժմեան դրութեան մասին. Սէսիլը պատասխանեց, որ կառավարութիւնը արժանահաւատ աղբիւրից ստացել է տեղեկութիւններ, որոնց համաձայն թիւրքերը դիտաւորեալ կերպով չարչարում են հայ աքսորեալներին մի տեղից միւսը քշելով, և նրանց ենթարկելով այնպիսի պայմանների, որոնց մէջ մահը դառնում է անխուսափելի։

Լորդ Ռոբըրդ Սէսիլն աւելացրեց նաև, որ թիւրքերը հայերի շրջաններում համաճարակ հիւանդութիւններ տարածելու համար ձեռք են առել դիւային միջոցներ։

Միւս կողմից, անկախ աղբիւրներից ստացուած լուրերի համաձայն, Հալէպի գերմանական հիւպատոսի, բազմաթիւ գերմանացի միսիոնարներ միացած ամերիկացիների, նպաստ են բաշխում հայ աքսորեալներին։

*Ամերիկեան «Նպաստի նաւը».*—Հոկտ. 21—22-ին Ամերիկայի Միացեալ Նահանգներում ի նպաստ հայ և ասորի փախստականների օգտին կայացած նպաստի օրերի ամբողջական արդիւնքը անցել է 2 միլիոն ռուբլուց։ Ամերիկեան կառավարութեան հաւանութեամբ՝ Ամերիկեան «Հայկական և ասորական նպաստամատոյց կոմիտէն» վարձել էր մի նաւ ուտեստ և հագուստ ուղարկելու Սիրիա և Միջագետք։ Մի քանի հազար թօնօ տարողութիւն ունեցող նաւը բեռնուած մեծ քանակութեամբ պահածոյ միս, ալիւր, խտացած կաթ, բրինձ, թէյ, շաքար և հագուստեղէն, դեկտ. 25 Ամերիկայից մեկնել է դէպի Բէյրութ, հասնելու փրկութեան մեր սովահար դժբախտ հայրենակիցներին։

Այստեղ պէտք է շեշտել, որ Ամերիկայում բնակուող մեր հայրենակիցները ցոյց են տուել եռանդուն աջակցութիւն այդ երկու օրուան յաջողութեան։ Բովանդակ հայութիւնը առանց կուսակցական խտրութեան, գործել է իբրև մի մարմին, որի հետևանքով էլ արդիւնքը եղել է լաւ։ Ամերիկահայ մամուլը այժմ ցոյց է տալիս օրինակելի համերաշխութեան ոգի, միմիայն նուիրուած է համազգային ներքին հարցերի քննութեան ու ներքին ոյժերի կազմակերպման։ Նոյն ուրախառիթ երևոյթը նկատելի է նաև Եգիպտոսում։ Այժմ Լօնդոնի հայ գաղութը պէտք է սովորի համերաշխութեան և սրտաբաց գործակցութեան դասը...

Ա. Սաֆրաստեան

Լօնդօն, 1 յունուարի 1816 թ.

---

## ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԻՑ

«Համբաւաբերի» խմբագրութիւնը խնդրում է իր թէ Թիֆլիսի և թէ գաւառների բաժանորդներից, որոնք թերթը կանոնաւոր չեն ստանում, բարեհաճեն շուտափոյթ տեղեկացնել խմբագրութեանս, յայտնելով իրենց ճիշտ հասցէն։

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

*Խմբագրութիւնս «Համբաւաբերի» տարածման համար շնորհակալութեամբ ստացել է հետեւեալ նոր նուէրները.*

*1. Պ. Մկրտիչ Առ. Քալանթարեանից 100 ռ. 25 օրինակի գինը։*

*2. Բագուից Եղբայրք Թումանեանների առեւտրական տնից 100 ռ. 25 օրինակի գինը Պարսկաստանի հայոց դպրոցների համար։*

*Առաջ ստացուած նուէրների մասին խմբագրութիւնս կարգադրեց.*

*1. Պ. Կարապետ Արբ. Խալաթեանի նուիրած 10 օրինակը ուղարկել Ալեքսանդրօպոլի հայոց գիւղական ծխական դպրոցներին Ալեքսանդրօպոլի յաջորդ Արտակ վարդապետի միջոցով.*

*2. Պ. Ալեքսանդր Մելիք-Ազարեանի նուիրած 25 օրինակից ուղարկել Շուշուայ Թեմակալ առաջնորդ Վահան վարդապետի միջոցով 10 օրինակ Զանգեզուրի, 10 օրինակ Շուշուայ գաւառի գիւղական հայ դպրոցներին և 5 օր. Գանձակի և Նուխուայ շրջանի դպրոցներին։*

*Պ. Յովսէփ Խրիստ. Յովսէփեանի նուիրած 25 օրինակը ուղարկել Թիֆլիսի թեմի դպրոցներին։*

*4. Պ. Ս. Յարութիւնեանի նուիրած 10 օրինակը ուղարկել Ղազախի, Բորչալուի դպրոցներին։*

*5. Ասլան Աթաբէկեանի 1 օրինակը ուղարկել Պողոս-Քիլիսայի դպրոցին։*

*6. Ալեք. Յարութիւնեանի 1 օրինակը ուղարկել Քարվանսարայի գրադարան-ընթերցարանին։*

---

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄ

Ռուսաց Արեւմտեան ճակատ.— *Շարաթուայ ընթացքում այս ճակատի վրայ գերմանական յարձակումները յետ են մղուել Կիսելինայ և Ն. Օլեկսինեցի շրջանում։*

Միջագետք.— *Միջագետքում Անգլիացիները յետ են մղել Թիւրքական գրոհները։ Թիւրքերը մեծ կորուստ են կրել։ Անգլիացիները պաշարել են նրանց Կուտ-էլ-Ամարայից արեւմուտք երկու ափերի միջև։*

Ֆրանսիական ճակատ.— *Ֆրանս-Անգլիական ճակատում Անգլիացիները Անկրից հիւսիս գրաւել են թշնամու մի շարք խրամատները և գերի բռնել 215 հոգի, Դաշնակիցները այս ճակատի վրայ վերջին շաբաթում բաւական աջողութիւն են ունեցել։*

Բալկանեան ճակատ.— *Այս ճակատում գործողութիւնները սկսում են եռանդուն բնոյթ ստանալ։ Իտալացիները յետ են մղել գերմանական գրոհները Ցռնայի և Պրեսպոյի շրջանում և գրաւել Օրսեկը։*

---

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

*Ճապոնական կառավարութիւնը որոշել է աջակցել Չինաստանին Գերմանիոյ դէմ գործելու դէպքում։*

*Յունաստան, Շվէցիան, Դանիան և Նորվեգիան բողոքի յայտագիր են ներկայացրել Գերմանիային՝ ընդծովեայ նաւապաշարման առթիւ։*

*Գերմանիան Միացեալ-Նահանգներին առաջարկել է քննել պատերազմի առաջն առնելու միջոցները։ Ամերիկան պատասխանել է, որ եթէ Գերմանիան հրաժարուի ընդծովեայ պատերազմից, պատրաստ է քննել բոլոր այդ միջոցները։*

---

# Ներքին տեսութիւն

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆԸ

*Մի շատ անորոշ, տարտամ դրութիւն է ստեղծուել այժմ Ռուսաստանի ներքին կեանքում։ Եւ չգիտէք ինչպէս բնորոշել այդ։ Թերևս շատ յարմար է «իրերի յաւիտենական դարձ» որակումը։ Չկայ մի որոշ ուղղագիծ շարժում դէպի առաջ, այլ անվերջ շրջանաձև կրկնութիւններ միևնոյն երևոյթների—դէպքերի ու դէմքերի։*

*Եւ արտաքին պատերազմական քաղաքական հանգամանքները միանգամայն նպաստում են այսպիսի անորոշութեան և «կանգնած տեղ վազելու» քաղաքական դրութեան։ Նորից Դումայի ընդհատ-ընդհատ նստաշրջաններ, նոր խոստումներ ու հաւաստիացումներ, նախարարական փոփոխութիւններ ու թաքստոցի խօսքեր և լուրեր, անվերջ լուրեր։*

*Ո՞ւր է վերջը այս անտանելի ողբերգական կատակերգութեան։*

*Մինչ երկիրն ու ժողովուրդը անհամբեր պատասխանի են սպասում իրենց հրատապ ու կենսական հարցերին, յետաձրգւում է օրէնսդրական հաստատութիւնների գումարումը և նորից «ուժեղ իշխանութեան» և «հաստատուն տրամադրութեան» սկըզբունքներն են կիրառւում։ Միշտ «նորոգւում է» նախարարութիւնն ու «կառավարութիւնը» և իբրև "նոր» միանգամայն անպարտ—նախորդների արարքների համար—ներկայանում Դումայի առաջ։ Եւ սկսւում է "միշտ բարեացակամ» խոստումների ու ծանուցումների և անբարեացակամ գործերի խաղը։ Եւ նոյնութեամբ դառնում, կրկնւում են դէմքերն ու դէպքերը։ Գորէմիկին, Շտիւրմէր, Տրեպով, Գոլիցին, գուցէ նորից Տրեպով, նորից Շտիւրմէր և այսպէս անվերջ։ Ռուսաստանի քաղաքացին իրեն զգում է ամեն տեսակ կարելութիւնների աշխարհում, ուր անհնարինը հնարաւոր կարող է լինել, իսկ հնարաւորը՝ անհնարին։*

*Եւ այդ բոլորը վերջ չեն ունենայ, ռուսական պետական կեանքն էլ բնականոն (նորմալ) ընթացք չի ստանայ մինչև չլուծուի պատմականօրէն Ռուսաստանի առաջ դրուած խընդիրը—առանց ժողովրդի «հայրենիքը փրկել» չի կարելի։ Կառավարութիւնը պէտք է ըմբռնի և ընդունի օրէնսդրական հաստատութեան պետական նշանակութիւնը և ամբողջովին յենուի նրա վրա, ընդունի նրա անկապտելի իրաւունքները—վերաքննութեան ենթարկելու կառավարութեան գործերը։*

*Խօսւում է, իհարկէ, նորից «հաշտարար» մարդկանց—Սազոնովի, Իգնատեւի և այլն կառավարութեան կանչելու, նոր «մեղմ» քաղաքականութեան, «նոր» հինգերորդ Դումա հրաւիրելու մասին։ Եւ այդ բոլորը մի բան անկասկած են կացուցանում. կառավարութիւնը շատ թոյլ է զգում իր ոտքի տակի հողը. զգում է, որ այսպէս երկիրը դէպի փրկութիւն տանել չի կարելի, բայց երևան է հանում բացարձակ անկամութիւն և անկարողութիւն իրօք նոր, յառաջադիմական, վերանորոգչական քաղաքականութիւն ընդունելու։ Իսկ այսպիսի պայմաններում դժուար է ասել՝ թէ իրերը բնական ընթացքով կըշարժուին և կապատեն երկիրը ծանր ճգնաժամից։ Պատմութեան տրամաբանու-*

թիւնն ու պետական իմաստութիւնը այլ բան են թելադրում և հրամայում, իսկ պետական գործիչները ուզում են արհամարհել ամեն իմաստութիւն և տրամաբանութիւն։

Սակայն, եթէ անզօր է մեծ մասամբ մարդկային տրամաբանութիւնը, անողոք է պատմականը, իրերի երկաթէ տրամաբանութիւնը։

Ահա այդպիսի ախտաւոր ու վտանգաւոր կացութեան մէջ է գտնւում Ռուսաստանի ներքին կեանքը, ուր կարծես ամեն ինչ կրկնւում է յարատեւ։ Եւ դժուար է ասել, թէ ինչը և երբ կարող է նրան հանել այդ կախարդական շրջանից։

Վ. Խ.

## ԿԱՐԵՒՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

Հայկական Կենտրոնական Կոմիտէն այս տարուայ յունուար ամսում յարուցել է Կովկասեան ճակատի գաղթականական գըլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշևի միջոցով կառավարութեան առաջ մի շարք կարեւոր խնդիրներ գաղթականական որբանոցների, դպրոցների, աշակերտական արհեստանոցների և գիւղատնտեսական զբաղմունքների մասին։

Խնդիրների զեկուցումներից կարեւոր են.

*Որբանոցներ.*—Զտեսնուած կեանքի թանգութիւնը, որը ոչ չափ, ոչ սահման ունի, անհնարին է դարձրել պահել որբանոցներ, ստանալով կառավարութիւնից 15-ական ռ. ամեն մէկի համար։ Նպաստի չափը սահմանուած է երկու տարի սրանից առաջ, երբ ամեն բան 2—3 անգամ աժան էր։

Անցեալ տարուայ փորձը ցոյց տուեց, որ ամեն մի որբի ամսական ծախսը հասնում է 20 մինչև 30 ռ. և աւելի, իսկ կահաւորման ծախսը մէկ որբի համար 20—25 ռուբլու փոխարէն պահանջում է 40—50 ռ.։ Ուստի և անցեալ տարի բոլոր որբանոցները ունեցել են մեծ դեֆիցիտ։ Կենտրոնական Կոմիտէն ունի որբանոցներում 4,369 որբ։ Անհրաժեշտ է տալ ամսական գէթ 22 ռ., որ կանի ամսական 95,986 ռ. աւելի և հաշուել անցեալ տարուայ երկրորդ կիսից, որ վեց ամսուայ աւելորդ ստացուածով 189,000 ռ. հնար լինի ծածկել վնասը։

*Դպրոցներ.*—Հայկական Կենտրոնական Կոմիտէի նախաձեռնութեամբ 1916 թուի սկզբներում յարուցուել էր կառավարութեան առաջ խնդիր, որ դպրոցական նպաստ տրուի գաղթական երեխաների համար և ցոյց էր տրուած, որ Կենտ. Կոմիտէն մինչև խնդրի յարուցանելը ունեցել է 3,740 աշակերտ, իսկ դպրոցական հասակի երեխաների թիւը 46.000 է։ Կառավարութիւնը Տատիանայի Կոմիտէի միջոցով յարգել է այդ խընդիրը և նշանակել է նպաստ միայն 8,740 աշակերտի, այն ինչ այս տարուայ բացուած գաղթականական դպրոցներում ընդունուած են 26,000 երեխաներից աւելի, որից 10,478 երեխաներ ընդունուած են Հ. Կենտր. Կոմիտէի բացած դպրոցներում։ Տատիանայի Կոմիտէից ստացուած գումարը բաժանելով ամեն մէկ երեխայի ընկել է ամսական 1 ռ., մնացած ծախսերը լրացրել են կազմակերպութիւնները և Հայկ. Կենտր. Կոմիտէն մինչև յունուարի 1-ը այս տարուայ ծախսել է 21,000 ռ. աւելի։ Կենտր. Կոմիտէն խնդրում է տալ իրեն 10,478 երեխաների համար անցեալ տարուայ հաշուից լրացուցիչ 83,424 ռ., կահաւորման համար 104.780 ռ. ընդամենը 188,204 ռ. և այնուհետև ամսական 31,434 ռ.։

Որովհետև երեխաները մերկ ու բոբիկ են, հարկաւոր է այդ կարիքների համար ևս 149,560 ռ.։

*Արհեստանոցներ եւ գիւղատնտ. աշխատանքներ.*—Կենտր. Կոմիտէն ունի 52 որբանոց 4,363 որբերով։ Շատ կարեւոր է լուրջ ուշադրութիւն ունենալ որբերի ապագայ վիճակի մասին։ Կարեւոր է, որ որբանոցների սաները, ստանալով ուսում և կրթութիւն, միաժամանակ պատրաստուեն կեանքի համար, որպէսզի երբ մեծանան և վերադառնան հայրենիք՝ գիւղ և քաղաք, կարողանան իրենց աշխատանքով պահպանել իրենց և իրենց ընտանիքը։ Այս նպատակով անհրաժեշտ է որբերին սովորեցնել արհեստներ և գիւղատնտեսութիւն։

Այս տեսակ զբաղմունքները կունենան և մեծ բարոյական նշանակութիւն, որովհետև որբերը փոքր հասակից կսովորեն սիրել և գնահատել աշխատանքը և կխորշեն ձրիակերութեան նշաններից։

Ներկայումս Հայկ. Կենտր. Կոմիտէն ունի որբանոցներում և դպրոցներում 14.841 հոգի։ Այդ երեխաներից ամենաքիչը 3,702 հոգի ընդունակ են պարապելու արհեստներով և գիւղատնտեսական աշխատանքներով։ Պէտք է ընտրել այն տեսակ արհեստներ, որոնք Հայաստանում հարկաւոր կլինեն։ Այս գործի համար հարկաւոր է 282,120 ռ. ծախս։

Այս զեկուցումները գեներալ Թամամշևը իր նպաստաւոր եզրակացութեամբ ներկայացրել է Պետրոգրադ Ներքին գործոց նախարարին կից առանձին խորհրդակցութեան։

## ԴՐՈՒԹԻՒՆԸ ՎԱՆՈՒՄ

(Սեպտեմբեր—Նոյեմբեր 1916 ամ.)

*Քաղուածք Կ. Հ. Բ. Ընկ.—թեան Լիազօր Դր. Օհանջանեանի զեկուցումից*

*Կազմակերպութիւնների եւ իշխանութեան փոխ-յարաբերութիւնները։*

Յուլիսեան նահանջից յետոյ եկան Վանի իշխանութեան ներկայացուցիչներ։ Քրդասիրութիւնը դեռ շարունակւում էր։ Յարաբերութիւնները եղել են չոր և պաշտօնական, շատ անգամ անախորժ, կասկածոտ և անբնական։

Հարկաւոր էր աշխատել ստեղծել բարեկամութիւն, հասկացնել նրանց, վասպուրականցիների սէրն ու հաւատարմութիւնը դէպի մեր դրացի քրիստոնեայ ժողովուրդը, այսուամենայնիւ զինուորական զանգուածի տրամադրութիւնը դէպի տեղացիները՝ կախուած է գլխաւորապէս տեղային տպաւորութիւններից։ Եթէ մեր կոշտ ու կոպիտ ժողովուրդը բարեկամութիւն ձեռք բերելու ընդունակութիւն ունենար, նրա կրած հալածանքը կիսով չափ կը պակսէր և հարկ չէր լինի կազմակերպութիւններին միջամտելու։ Այն էլ պէտք է խոստովանել, որ շատ թիւրիմացութիւններ ծնունդ են առնում մեր գաղթականութեան հոգեկան ու վըրդոված վիճակից,

Այստեղ է, որ հարկաւոր են խելացի գործիչներ՝ հարթելու ստեղծուած և ստեղծուելիք հակամարտը։ Ո՛րքան զոհաբերութիւն մեր ժողովրդի կողմից՝ յանուն ռուսական զէնքի և քաղաքակրթութեան յաղթանակի, բայց և ո՛րքան աննպաստ կարծիքներ մեր երկրում պաշտօնավարող իշխանութիւնների կողմից, որոնք կործանարար հետևանք են ունենում մեզ համար…

Շատ անգամ պարզուել են շատ թիւրիմացութիւններ։ Ցաճախակի միջամտութիւն է արուած անասունների ձմրան պաշարը չ՚գրաւելու համար և ստացել է դրական հետևանքներ։ Երբեմն մենք ենք սակարկել գիւղացիների ծախու խոտերը և վաճառել զօրքին՝ յօգուտ գիւղացիների, որպէսզի զուր չփչանան։ Վերջապէս քրդական վերջին դաւաճանութիւնից յետոյ իշխանութիւնը

գուցէ հասկանայ, որ քրդի հետ բարեկամանալը մի ռոմանտիկ քայլ էր։

*Համագործակցութեան անհրաժեշտութիւնը*—Վանի շրջանը արժանի է առանձին ուշադրութեան։ Սակայն մի քանի կազմակերպութիւններ հրաժարւում են գործելուց այն պատրուակով՝ թէ երկիրն ապահով չէ, և թէ այնտեղ կատարուելիք ծախքերը կը կորչեն, որով աւելի ծախսերն են ուշադրութեան առնւում քան գաղթականութիւնը։

Նոյեմբերեան նահանջից յետոյ նոյն կարծիքն էր արծարծւում և հայ մամուլի էջերում։

Նախ և առաջ չ՛պէտք է մոռանալ, որ կազմակերպութիւնների ներկայացուցիչների փախուստը երկրից, ժողովրդից առաջ, և դրանից առաջացած կորստաբեր խուճապը աւելի պերճախօս նախազգուշացումն էր վտանգի մասին։ Բայց և այնպէս բնակչութիւնը մնաց իր տեղը, նոյնիսկ Կովկաս փախչողներն էլ վերադարձան՝ նախքան կազմակերպութիւնների վերադառնալը։

Այդ ապացոյց է, որ ժողովուրդը, կազմակերպութիւններից դատ, ունի իր համոզմունքը և անհրաժեշտ է համարում ապրել երկրում։

Միայն Վանում մօտ 5000 մնայուն տուն կայ և նոյնքան էլ այգիներ, որոնք կազմում են մի քանի միլիոն հարստութիւն, իսկ Վասպուրականի շրջանի գիւղերի և այգիների հետ միասին մի հոյակապ գանձ, մի գեղածիծաղ օազիս՝ հայի աւերակ երկրում

Տեղահանել վասպուրականցիներին, նշանակում է 18,000 գաղթականութիւն, նորէն խտացնել 300,000 գաղթականութեան վրայ, զրկել նրանց վար ու ցանքից և ստիպել ամբողջ ժամանակ շարունակ հաց գնել, այն էլ առանց նպաստի։

Եղան գործիչներ, որոնք բացականչեցին, թէ երկրում ապրելը ոճրագործութիւն է, ասացին այն ժամանակ, երբ թշնամի չկար, ամեն մի վանեցի, միջին թւով 20 փութ ցորեն կը հաւաքէր արտից և տաս փութ սերմի հերկ աւել կը հերկէր։ Երբ չկայ ուժեղ թշնամի, ժողովրդին Վասպուրականից հանելը ոճրագործութիւն է։

Այդ խնդրի նկատմամբ կազմակերպութիւնները պէտք է որոշ համաձայնութեան գան։

Անհրաժեշտ է, որ Վանում չ.գործող հայ կազմակերպութիւններր կամ հաւանութիւն և կամ աջակցութիւն ցոյց տան բարեգործական ընկերութեան Վանի գործունէութեան։

*Հարկաւոր է վասպուրականցիներին երկրում ապահովել.*—

Վանի չորրորդ նահանջն էլ տեսանք։ Ոչինչ չէ արւած նման նահանջները տեղի չունենալու համար։

Պետական դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանը մի մարդաշատ ժողովում նույնը կրկնեց, ինչ որ «Մշակը», թէ մէկը չեղաւ ժողովրդին ասելու, թէ ինչպէս է ապրում կոտորածի վայրում։

Թոյլ ենք տալիս յիշեցնել և յարգելի պատգամաւորին, որ հարց չդրուեց կառավարութեան, որ Վանի շրջանն ուղարկուած են բազմաթիւ գումարներ, լծկաններ, գործիք և սերմացու կառավարութեան կարգադրութեամբ։ Ինչպէ՞ս էր ապահովել կառավարութիւնը այդ հսկայական գանձը և դրա հետ կապուած հսկայական աշխատանքը, դեռ չասենք 30,000 բնակչութեան գոյութեան մասին։ Մէկը չեղաւ որ հարցնի, թէ ինչպէս տեղական իշխանութիւնը զինում էր քրդերին, իսկ հայերից առնում եղած զէնքերը, երբ պարզ էր, թէ ում դէմ պիտի ուղղուէր քրդին տուած զէնքը։

Մի Բէհրի-բէկ կամ մի Խուրշուդ-բէկ կարողանում են զինել իրենց ցեղակիցներին մեր կառավարութեան թոյլատւութեամբ, իսկ հայազգի պատգամաւորները, Կաթողիկոսով ու կազմակերպութիւններով հանդերձ այսքան տառապանքներից ու զոհաբերութիւններից յետոյ չկարողացան մի նահատակ ժողովրդի չարքաշ գոյութիւնը պաշտպանելու հնար գտնել։

Չգիտեմ մե՞զ մեղադրենք, թէ ուրիշներին։ Թւում է թէ դեռես ուշ չէ։ Դեռ ժամանակ կայ աշխատելու մի նոր նահանջի դառն բաժակը հետ կասեցնելու համար։

*Աշխատանքի կազմակերպումը.*—Գարնանամուտին մօտ 60,000 բնակչութիւն է ապրելու Վանի շրջանում, եթէ երկրում ապահովութիւն եղաւ։ Ի՞նչքան կոտրուած դռներ պիտի շինուեն, տանիքներ նորոգուեն, որքա՞ն խոտ ու մանգաղ է հարկաւոր բաժնել գիւղացիներին։ Այդ բոլորի կարիքն է զգացուելու տենդային աշխատանքի օրերին և ո՞րքան բազուկներ պարապ են մնալու գործիքների բացակայութեան պատճառով։ Մի արշին տախտակը 3 ռուբլի է դառնալու, բեւեռի փութը 100 ռ. Ինչու՞ գարբինը ածուխի փութը 8 ռուբլով պիտի գնի, երբ կարելի է մէկ ռուբլով պատրաստել։

Պէտք է ձեռնարկել աշխատանքի կազմակերպումը։ Բանալ արհեստանոցներ, տախտակ քաշել տալ, խոփ ու մանգաղ պատրաստել, և առհասարակ շինարարական գործիքների պաշար ստեղծել, որով հազարաւոր ձեռքեր աշխատանք կստանան և ապրուստ կունենան։

---

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Յունուարի 20-ին պ. Ստ. Լիսիցեանը դասախօսեց «Հայաստանի աշխարհագրութեան ազդեցութիւնը նրա մշակոյթի և պատմութեան վրայ» նիւթի մասին։

Դասախօսը նախ և առաջ երկարօրէն կանգ առաւ Հայաստանի աշխարհագրական կազմութեան վրայ, որը նմանեցրեց սեղանի, որ որոշակի կերպով բաժանուած է հիւսիսից՝ Կուր և Ռիոն գետի հովիտներից և հարաւից՝ Վերին Միջագետքից, իսկ արեւելքից և արեւմուտքից թէև հետզհետէ իջնում է, սակայն ունի բաւականին պարզորոշ կերպով գծուած սահմաններ։ Հայաստանը մի ցանց է մանր «տուփ» հովիտների, որոնք դաշտերի բնոյթ ունին։

Կլիման—ձմեռը ցրտաշունչ, ամառը տօթային է, անձրեւները համեմատաբար քիչ, ձիւնի շերտը՝ հաստ, որից առաջանում է գետերի վարարում գարնանը և բազմաթիւ աղբիւրների բղխումը։

Դասախօսը մանրամասնօրէն ցոյց տուեց աշխարհագրական առանձնայատկութիւնների ազդեցութիւնը ազգագրական կազմի վրայ, սկսելով Խալդական շրջանից։ Ներգաղթողները տեղաւորւում են դաշտերում, վեր մղելով տեղացիներին դէպի լեռների անջերը։ Ազգերի դասաւորութեան ժամանակ դաշտերի բնակիչները ամենամեծ ազդեցութիւնն են ունենում երկրի նոր լեզուի կազմութեան վրայ։

Ինքնուրոյն պետական կեանքը երեք անգամ է կազմակերպւում Հայաստանում։ Հայաստանում կազմակերպւող տեղական բոլոր պետութիւնների մէջն էլ կենդրոնական իշխանութիւնը թոյլ էր. դա բացատրւում է մանր «տուփ» հովիտների մէջ նստած իշխանութիւնների ինքնավարական ձգտումներով։ Գաւառական ինքնուրոյնութիւնը միշտ մաքառում էր պետական ընդհանուր միութեան դէմ։

Նոյնպէս Հայաստանի «տուփ» հովիտների բաժանուած լինելն է, որ առանձնապէս նպաստեց մեր հոգեւորականութեան նախարարացման։

Հայկական գեղարուեստն էլ ազդուել է աշխարհագրութիւնից։ Ճարտարապետութիւն, երգեցողութիւն, բանաստեղծութիւնը մեծ չափով ազդուել են Հայաստանի բնութիւնից, որն իր կնիքն ունի նաև հայ ցեղի բնաւորութեան վրայ։

—

Յունուարի 27-ին՝ հայ գրողների ընկերութեան ժէ. գրական երեկոյթին պ. Մ. Աբեղեանը դասախօսեց «միջնադարեան հայոց առակների» մասին։

Դասախօսութեան առաջին մասում խօսեց թէ երբ և ում ձեռքով են զարգացել մեր՝ հին գրականութեան մէջ առակները։ Մեր գրականութեան սկզբում եղել են անգիր առակներ, բայց ինչպէս ընդհանրապէս մեր ժողովրդական բանահիւսութիւնը, նոյնպէս և ժողովրդական առակները երկար ժամանակ արհամարհուած են մնացել գրագէտ եկեղեցականներից, որոնք սակայն ունեցել են թարգմանական առակներ։

Առաջին հայ առակագիրը Ներսէս Շնորհալին է։ Բայց իսկական առաջին առակագիրն է Մխիթար Գօշը։ Ն. Մառը կասկածում է, թէ Գօշի անունով յայտնի առակները, թւով190, նրանը լինեն։ Բայց պ. Աբեղեան հիմնաւորուած չի համարում այդ կարծիքը։ Առակներ գրել է նաև Վարդան Այգեկցին, թւով 485 առակ լոյս են տեսել Մառի խմբագրութեամբ։

Դասախօսութեան բ. բաժնում՝ դասախօսը բացատրեց առակների ներքին բովանդակութիւնը։ Այդ առակների մէջ պատկերացնում են հայ ժողովրդի վարչական գրութիւնը, աշխատաւոր դասի ծանր վիճակը, ազնուականութեան դիրքը, Մխիթարի առակների մէջ առանձնապէս աչքի է ընկնում հայերի և այլազգիների յարաբերութիւնը։ Իր բոլոր բացատրութիւնների հետ միասին դասախօսը երբեմն-երբեմն, կարդում էր առակներից օրինակներ։

X.

## ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԵՐԿՈՒ ՆՈՐ ՕՋԱԽ

Սղնախեցի մեծատուն պ. Նիկողայոս Յովսէփեանը, գեղեցիկ միտք է յղացել յաւերժացնելու իր անունը, բանալով մի նոր դպրոց Սղնախի գաւառում, Կակաբէթ գիւղում։

Գ. Ն. Յովսէփեանը Վրաստանի և Իմերէթի հայոց թեմի գեբապատիւ Առաջնորդ Մխիթար եպիսկոպոսին յանձնել է 10,000 ռ. շինութիւն կառուցանելու դպրոցի և եկեղեցու. խոստանալով անհրաժեշտ ծախքերի համար յատկացնել 5000 ռ. ևս։

Սղնախի գաւառում այս երրորդ գեղեցիկ նախաձեռնութիւնն է։ Առաջին օրինակը եղել է Լիանոզեանը, որը նուիրել է Սխնաղի հայոց եկ. ծխ. դպրոցին մի տուն, որն այժմ տալիս է տարեկան 800 ռ. եկամուտ։ Երկրորդը Սղնախեցի մեծատուն պ. Սիմէօնեանը, որը 1915 թ. սեպտեմբերին Սղնախի արուարձան Նակրիանում բաց արեց եկ. ծթ. դպրոց մի ուսուցչով, որն այս տարի ունի 2 բաժանմունք և երկու դասատու։ Այս դպրոցը նպաստ է ստանում Կ. Հ Բ. Ը.-ից տարեկան 200 ռ. 1916-17-ին։

Կակաբէթ գիւղը Սղնախ քաղաքից 30 վերստ հեռու է, ունի 130 տուն վիրախօս հայեր, որտեղ ներկայ ուսումն. տար. բացուած է դպրոց և ունի մէկ բաժանմունք, այս դպրոցը այս տարի պահւում է Թիֆլիսի հայ քահանաների դպրոցական յանձնաժողովի միջոցներով։ Ներկայ արիւնալի օրերում մեզ համար շատ թանկ են այս լուսաւորութեան նոր օճաղները, որոնք պիտի ծառայեն մեր վաղուց մոռացուած մայրենի լեզուի վերակենդանացման։

Հայ դպրոցական պատմութեան մէջ միշտ էլ յարգանքով պիտի յիշուեն այս մեծանուն հայերի անունները, որոնք իրենց կենդանութեան օրով կանգնեցրին գեղեցիկ կոթողներ իրենց անուան։

Լ. Բուր-Ժուա.

## ԳԱՒԱՌ

Լագոդաղ 9 յունւարի 1917 թ.—Ինչպէս նոր տարին այստեղ բացուեց պայծառ ու գեղեցիկ շողշողուն արևի ճառագայթներով, այնպէս էլ Լագոդաղի հասարակութիւնը սրտաբաց ու առատաձեռն ոգով և սրտով հանդէս եկաւ։

Նոքա միահամուռ ուժով միացած հաւաքեցին չորս (400) ռ. և 5-ի երեկոյեան Թաթախման գիշերը տեղումս գտնուող 210 հայ զինուորների տուին փառաւոր «ընթրիք»։ Գործի գլուխ էին անցել պ. պ. Ա. Բալայրումեան, Կ. Մելիք-Մկրտիչեան, Կ. Յարութիւնեան, Սամարեան և Մ.Առոմեան։ Երեկոյթը շատ գեղեցիկ և բարի քայլ է թեթևացնելու ծանր վիճակը այն զինուորների, որոնք հեռու իրենց հայրենիքից, սիրելիներից, քաշում են այս ներկայ պայմաններում դժուարին զինուորական դրութիւնը։

Նոյն 6-ի Թաթախման գիշերը հասարակութիւնից ընտրուած վերոյիշեալ անձինք յօգուտ տեղիս դպրոցի «Խորհուրդ» մեծ ասացին և հաւաքեցին չորս հարիւր (400) ռ.։ Մի ուրիշ խմբակ ևս փոքրերից—Աւետիս շրջելով հաւաքեցին յօգուտ Տաճկաստանում գտնուղ հայ գերիներին՝ 70 ռ. Այս բոլոր գումարները ցոյց են տալիս Լագոդաղի հայ հասարակութեան բարձրութիւնը, այն Լակոդաղի,ուր կան միայն 100—110 ընտանիք։ Գիտակցութեամբ բարձր է կանգնած, որովհետև այսպիսի դժուարին պայմաններում պատրաստ է օգնութեան հասնելու։ Հասարակութիւնը ունի բարի ձգտումներ, կան և այլ գործիչներ և բացի վերոյիշեալներից և Նարնեանը։ Բայց հարկաւոր է կազմակերպուել եռանդով ու յարատև առաջնորդել հասարակութիւնը։

Վարշամ Փարսադանեան։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է «Тиф. Лист.»-ի խմբագրութեան միջոցով հանգ. Նինա Պարուն-Սարգսեանի ընտանիքից հոգեհացի փոխարէն 25 ռ.

—Թեմիր-Խան-Շուրայից Լիւդմիլա Վլադիմիրովնա Կոմարովսկուց յօգուտ հայ գերիների 6 ռ.

—Վելիսցիխէից Սիմէօն քահ. Տէր-Ղազարեանից յօգուտ գաղթականների 54 ռ.

—Լիպարիտ Մելիք-Սարգսեանից յօգուտ Օրթաճալայի որբանոցի 30 ռ.

—Աբել Միլքումեան Աղայեանը ներկայացնելով Խորհրդիս 100 ռ. խնդրել է ընդունել իրեն Ընկ. մշտական անդամ։ Խորհուրդը յարգելով պարոնի խնդիրը տուեց նրան մշտական անդամութեան մրցագիր (ДИПЛОМЪ).

—Սոլոմոն Լվովիչ Պոլեակից ի յիշատակ հանգուց. Եկատերինէ Մելիք-Ղարագեօզեանի 25 ռ.

—

### Ճաշարան

Յունուարի ընթացքում Կ. Հ. Բ. Ընկ. ճաշարանից տրուած է 6,410 ճաշ։

### Գրադարան-ընթերցարան

Յունուար ամսի ընթացքում Կ. Հ. Բ. Ը.-թեան կենտրոնական ընթերցարանն են յաճախել 6,335 հոգի, որից 3,350 կին և 2,985 այր։ Տրուած է կարդալու համար 5231 գիրք, որից 3960 հայերէն և 1271 ռուսերէն

—

*Անահիտեան եւ Շիրինեան գրադարաններ*.—Յունուար ամսի ընթացքում Կ. Հ. Բ. Ընկերութիւնը մանկական գրադարաններ է ուղարկել հետևեալ վայրերի փախստական որբանոցներին.

«Անահիտեան» գրադարաններ—Բաթում, Գանձակ, Ղարա-

քիլիսէ, Պետրոգրադի Կոմիտէին և Ալաշկերտ։

«Շիրինեան» գրադարաններ հետևեալ դպրոցներին—Խաչի Թելեթի, Շվինդիսի, Կումիսի և Վաշլովանի։

—

## ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Փետրուարի 2-ին տեղի ունեցաւ Հ. Կ. Կոմիտէի նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, որը զեկուց հետեւեալները.

1. Աստրախանի Թեմի առաջնորդ Մեսրոպ եպ. իւր կարդացած դասախօսութեան արդիւնքը՝ 600 ռ. յատկացրել է տեղւոյս և Սանահնի որբանոցների մրգեղէնի և սրբազանը գնել տալով չոր մրգեր ուղարկել Կոմիտէին ի տնօրէնութիւն։

—

Արտանուճի որբանոցի կառավարիչ պ. Վ. Մազմանեանը զեկուց, որ արդէն որբանոցը բացուել է և ցուցակագրուել են 180 որբ, բայց դեռ սպասւում են շրջանից նորերը։ Արտանուճը և իւր շրջանը ունեն մի շարք տուեալներ որբանոց ունենալու, միայն ալիւրի պակասութիւնը խանգարում է։ Ժողովը որոշեց որբանոցի համար ուղարկել ալիւր և առհասարակ անհրաժեշտ մթերքներ։

Այդ շրջանում կան նաև գաղթ. դպրոցներ 200 աշակերտուհիներով։

—

Պ. Նախագահը զեկուց Խնուս-Մուշի լիազօր պ. Կարօ-Սասունու տեղեկագրից.

ա) Մուշում արդէն գործում է սննդատու կայան, որից օգտւում են ամբողջ շրջանի գաղթականութիւնը։

բ) Խնուսում բացուել է որբանոց 59 որբի՝ և Հարամիկում 50 որբի համար, այդ շրջանում բացուել են նաև 3 գաղթ. դըպրոցներ 258 աշակերտ-աշակերտուհիներով։

—

Հ. Կ. Կոմիտէի նպաստատու մասնաժողովի միջոցով 1917 յունուարի 23—28-ը 105 կոյր, հիւանդ, անկեալ գաղթականներին տրուել է 176 ռ. 15 կ. նպաստ։

—

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Յունուար 24-31-ը.

Ալիւր ուղարկւում է Ալէքսանդրոպոլ 6 վագոն, Վաղարշապատ՝ 2, Քարվանսարա՝ 500 փ., Դիլիջան՝ 500 փ. Գանձակ՝ 1, Երևան՝ 1, Ղարս՝ 1, և Նոր-Բայազէտի, Դիլիջանի և Քարվանսարայի որբանոցների համար 2 վագոն, ընդամենը 14 վագոն։

Շաքարաւազ ուղարկուած է Գանձակ՝ 500 փութ, Ղարս՝ 500 և Աշտարակ՝ 300, ընդամենը 1300 փ։

Սապոն ուղարկուած է Ղարս՝ 40 փ., Աշտարակ՝ 40, Դիլիջան՝ 20, Քարվանսարա՝ 20 և Դիլիջանի որբանոցի համար՝ 20, ընդամենը 140 փութ։

Ցորեն ուղարկուած է Սարիղամիշ՝ 1 վագոն, Ալեքսանդրոպոլ՝ 3 և Երևան՝ 1, ընդամենը 5 վագոն։

Նոր գնումներ գնուած է Նոր-Սենակում 7 վագոն սիսեռ և Փոթիում 10 վագոն գարի։

Կ. Հ. Բ. Ը. Պարենաւորման բաժանմունքի կառավարիչ պ. Ա. Միանսարեանը վերջին զեկուցման հիման վրայ, Պարենաւորման Մասնաճիւղը իր վերջին նիստում որոշեց, ի նկատի ունենալով, որ բաժանմունքի գործերը քանի գնում աւելի ու աւելի ընդարձակւում են և որ սկզբնական շրջանառութեան գումարը 1,400,000 ռ. այլևս չի կարող բաւարար համարուել բաժանմունքի համար, ուստի որոշեց խնդրել գեներալ Թամամշեանին, որ վերջինս միջնորդէ Նախարարների խորհրդին կից առանձին խորհրդակցութեան առաջ պետական միջոցներից շրջանառութեան դրամագլխի վրայ աւելացնել ես 600,000 ռ., որպէսզի կարելի լինի Հիւսիսային Կովկասում ձեռնարկած գնումները շարունակելու։

Սոյն որոշումը գեներալ Թամամշեանի ներկայացուցիչները պ. պ. Ա. Սլիվիցկինու և Դ. Դ. Ստրելկովի կողմից՝ որ ներկայ էին նիստին, ջերմ պաշտպանութիւն գտաւ։

Նոյն նիստում բաժանմունքի լիազօր պ. Ալ. Շարաբեանը, որ նոր էր վերադարձել Հիւսիսային Կովկասից զեկուց, որ բաժանմունքի լիազօր պ. Յ. Մելքոնեանցը Հիւսիսային Կովկասում մինչև օրս կատարել է հետևեալ գնումները.

1) 356 վագոն ալիւր, 2) 50 վ. եգիպտացորեն, 21 վ. ցորեն և 2 վ. սապօն։

—

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻՆ

(հեռագիրներ)

Սարիկամիշ.— Կորիւն Ղազազեանին Երզնկայից հեռագրում են ալիւր չը լինելու պատճառաւ 200 գաղթական սոված են մնացել. Դերջանի գաղթականների դրութիւնը կրիտիքական է. երեք հազարից աւելի գաղթական մնացել են առանց հացի։ Ստացած ալիւրից 3 վագոն ուղարկեցի Կարին, որից 2 վագոն կարելի է յատկացնել Երզնկայի և Դերջանի գաղթականներին։ Խնդրում եմ Տէր-Յակոբեանին անել հարկաւոր կարգադրութիւն Կարնում

—

Տէր-Յակոբեանին հեռագրուած է. 3 վագոն ալրուը ստանալուց Կարնի Շրջանային Կառավարչի հետ խորհրդակցելու Դերջանի գաղթականներին ալիւր մատակարարելու միջոցների մասին։ Եթէ Քաղաքների Միութեան լիազօրը կը պահանջէ Երզնկայի համար ալիւր, տալ 500 փութ։

---

# Քրոնիկոն

---

Պատրաստ է և շուտով գրաքննութեան կը յանձուի թոյլատուութեան համար՝ ներկայ իրական կեանքից «Պայթիւն վերվերնագրով, հեղ. պ. Գէորգ Մուրադեանի։ Թատրերկը գրուած է ռուսերէն և հայերէն լեզուով։

—

Երեկ ամսիս 4-ին հասարակական ակումբում Յովհ. Քաջազնունին խօսեց Շէքսպիրի և Սերվանտէսի գործերի մասին։

—

Հին-Նախիջևանցի փականագործ մի պարոն՝ Ղուկաս Այվազեան անունով հնարել է նոր ձևի մեքենաշարժ նաւ, որ մասնագէտների կարծիքով մի ժամում կարող է անցնել մի քանի հազար վերստ։

—

Վրաստանի էկզարխ Պլատօն Արքեպիսկոպոսը Բորչալուի գաւառի Ուռուտ գիւղում Իշխ. Մելիքովների նախկին կալուածքում, բանում է մի ընդարձակ որբանոց պատերազմի մէջ ընկած զինուորների երեխաների համար։

—

Թիֆլիսի վաճառական բանկի անդամների արտակարգ ընդհանուր ժողովում որոշուեց բաց թողնել 5 միլիոն նոր բաժնեթղթեր և բանկի բաժանմունքներ բանալ կովկասեան միւս քաղաքներում։

—

Պատշաճաւոր իշխանութիւնը հաստատել է արդէն «Հայերի մէջ գրագիտութիւն տարածող ընկերութեան» կանոնադրութիւնը. ընտրութեան առաջին հիմնդիր ժողովը կըկայանա շուտով։

—

Ամսիս 10-ին յօգուտ Կ. Հ. Ը.-թեան ճաշարանի տուփերով միօրեայ ժողովարարութիւն է լինելու։

—

Փետրուարի 5-ին Միլեանների նախկին կրպակում (մագազին) Պօլօվինսկի պրօսպեկտ բացուելու է հայ գրողների ցուցահանդէսը։

—

Քաղաքային դումայի վերջին նիստում վարչութեան անդամ վերընտրուեց Գ. Դ. Ժուրուլին։

—

Հ. Գիւղ. ընկերութեան կից հիմնելու է յատուկ կօօպերատիւ բաժանմունք մասնակցութեամբ միւս հայ կազմակերպութեանց ներկայացուցիչների գաւառներում կօօպերատիւներ կազմակերպելու համար։

—

Վերսկսում է Թուրքաց «Մօլլա-Նասրէդին„ երգիծաբանական շաբաթաթերթի հրատարակութիւնը։

# Գեղարուեստ

## ԱՄՊԵ՛Ր

Երկինք տխուր է, ամպերը լալկան.
Խնդրեմ դուք, ամպե՛ր, ինչո՞ւ կարտասուէք,
Ձեր սիրահարին պատասխան տըւէք.
Հո՞գ ալ բռնութիւն, զըկում ու վիշտ կան։

Ա՛, գիտեմ, ամպեր, անձնուէր էք միշտ.
Ձեր արցունք մեզի կեանք կուտան յաւէտ,
Մեր դաշտերում ալ ծաղկունք հոտաւէտ.
Ձեր լացով միայն ուրախ էք, անվիշտ։

Հորիզոնին վրայ մերթ բամբակ գուլայ
Ոսկի արևին արծաթ շողերուն
Մէջ լոգանք կընէք, և մերթ հոն հեռուն
Խաղալիք կըլլաք ղիփիւռին, որ լայ։

Մերթ վերջալուսի խնկամանին մէջ
Լճու շողիացող բոյրերու նման
Բարձունքները վեր, դէպի անսահման,
Հանդարտ վերանար ձեր ճամփայէն գէջ։

Երբեմն կռուաէր մանուկներու պէս
Անջրպետին մէջ «կռիւ» կորոտաք.
Ահ, ձեր բարկութեան արդիւնքը կայծակ
Հպարտ գագաթներ փշրէ աշխարհէս։

Անսանձ հողմերուն թևերը ուժգին
Փոխ առէք խնդրեմ, վազէք հայրենիք.
Պատմեցէք մօրս թէ լուրեր ունիք,
Փաթթրկոտ սիրտը, թող հանգչի հոգին։

Մտածումներուս արցունքը եղկելի
Արդար նախանձիս կայծերը չէկ շող
Առէք ու տարէք և ձեզի հետ թող
Երթան ու տեսնեն գեղուհիս փափկիկ

Սիրոյս հրավառ՝ կարօտիս այրող
Կարմիր բոցերէն փոքրիկ նմոյշներ
Ձեր քղանցքին մէջ պահեցէք, ամպեր,
Եթէ կարօտով գրկեմ այս ցուրտ հող։

Տարէք իմ Ազգիս։ Բայց տար երկնից տակ
Ես հոգի չեմ տար, պիտի մարտնչիմ,
Պիտի յաղթեմ ես, այս է փափաքն իմ.
Պարապ պիտ՝ ճանբեմ հոգեքաղ հրեշտակ։

Ամպեր, ձեզիպէս արցունքիս անձրև
Առատ պիտ տեղամ, թող պտղաբերեն
Ու կեանքն ապագայ տարբերի հինէն,
Ինչ փոյթս թէ հիմա մթնած է արև։

Ն. Ս. Սահակեան

# Գրականութիւն

## ԾԻՐՈՒՆՈՒ ՋՐՈՑԸ

—Մարդս ի՞նչ բան է, հարցրին բարի ծերունուց։

—Մարդս, պատասխանեց ծերունին, նման է ան թուղպին, որից անձրևի կաթիլները թափուեցին մարգագետինների, դաշտերի, անտառների, այգիների, լճերի ու գետերի վրայ։ Իրա մէջ ունեցած օրհնեալ հիւթը թուղպը թափելով զովացրեց ու կեանք տուեց միլիոնաւոր խոտերի, հասկերի, թփերի, ծառերի և այժմ ինքը դարձել է պայծառ, թափանցիկ. քիչ միջոցից ետ նա բոլորովին կանհետանայ, կուլ կըգնայ անհունութեան։ Ճիշտ այդպէս է, սիրելիք, նաև մարդուս երկրաւոր կեանքը, որի ընթացքում նա անթիւ, անհամար անձերի օգնութեան ձեռ է մեկնում, նրանց կեանքը թեթևացնում, ուղիղ ճանապարհի կանգնացնում, ամեն կերպ մխիթարում ու յետոյ, երբ բոլորովին ուժահատ է, վախճանւում է ու վերադառնում այնտեղ, ուր ապրում է մշտընջենաւորը, անտեսանելին, հոգեղէնը...

Կուզէ՞ք, պատմեմ ձեզ անձնուրացութեան մի սքանչելի օրինակ, որ մնացել է աւանդութիւնների մէջ։—Վաղ ժամանակ երկրի վրայ սարսափելի երաշտ էր. ցամաքել էին բոլոր գետակները, առուները, ջրհորները. չորացել էին ծառերը, թփերը և բոլոր խոտեղէնները։ Ջուրն այնքան սուղ էր, որ ծարաւութիւնից թուլանալով անշնչանում էին թէ մարդիկ և թէ անասունները։ Մի մայր, եօթ տղայ կորցրած, կսկիծից հիւանդութեան մահճում տառապում էր։ Մենակ աղջիկն էր մնացել մօտը, սա ամեն ահ մոռացած վերցրեց փայտէ գուշը մթնով դուրս եկաւ ջուր ճարելու, որ սիրելի մայրը թխուած բերանը թրջի։ Աղջիկն ինքն էլ սաստիկ ծարաւ էր, շատ դէս դէն ընկաւ, ողջ գիշերը պտըտեց, ոչ մի տեղ ջուր չըգտաւ։ Երկար թափառելուց յոգնած, ուժասպառ պարկեց դաշտում ու ննջած ընկաւ քնի ծոցը։ Լուսաբացին զարթելով ձեռն շտապ մեկնեց գուշին, այնպէս ուժով թափահարեց, քիչ մնաց, որ գուշը պարանի ու միջի ջուրը թափի, որովհետև հրաշքով գուշը պռնկէ պռունկ լցուած էր յստակ, թարմ ջրով։ Աղջկայ ուրախութեան չափ չկար, մէկ սիրտն ուզեց պապակած շրթունքները մօտեցնել գուշի պռնկին, ծարաւը կոտրել, մէկ էլ ասեց. «վա՜յ թէ ես բոլորը խմեմ ու հիւանդ մօրս բաժին չը մնայ»։ Այդպէս մտածելով գուշի ունկից ամուր բռնած վազեց դէպի տուն։ Այնպէս արագ էր ընթանում,

որ խելք չէր նշմարում թէ ոտի առաջն ինչ կայ։ Ուստի մի շնիկի ոտի տակ տալով գայթեց ու գլխի վրայ գալով գուշը ձեռից բաց թողեց։ Շնիկը մի կողմ քաշուեց ու աղեկտուր կալանչեց, նա էլ ծարաւաչոր էր։ Աղջիկը շուտ վերկացաւ, ձեռը մեկնեց գուշին, կարծում էր, թէ ջուրը թափուել է ու զուր տեղ կորել, բայց տեսաւ, որ սխալուած է, որովհետև գուշն ուղիղ կանգնած էր գետնին մինչև բերանը ջրով լիք։ Գթոտ աղջիկը իրա ծարաւը մոռացած, գուշից ջուր ածեց ափի մէջ ու մօտեցրեց շնիկին, ծարաւաչոր անասունը ջուրը լակեց ու զուարթ, ուրախ թռչկոտաց։ Երբ աղջիկը երես շուռ տալով ձեռը մեկնեց գուշին, զարմանքը կալաւ նրան, որովհետև փայտէ գուշը դարձել էր արծաթէ գուշ։ Ուրախ սրտով աղջիկը վերցրեց գուշը, շտապով հասաւ տուն և տուեց մօրը, որ խմի։ Շատ էլ պառաւի բերանը ծարաւութիւնից թխուած էր, բայց երբ նայեց աղջկայ դալկացած դէմքին, սիրտը մղկըտաց.

—Սիրելի զաւակ, ասեց մայրը, ես խմեմ, չըխմեմ, միևնոյն է, մեռնելու եմ, ափսոս է քու մատղաշ հասակը, աւելի լաւ է, դու խմիր, ծարաւդ կոտրելով ապրիր։

Եւ հիւանդ մայրն արծաթէ գուշը մեկնեց դէպի անձնուէր աղջկը։ Հենց այդ վայրկեանին արծաթէ գուշը փոխուեց, դարձաւ ոսկէ գուշ։

Ծարաւութիւնից աղջիկն այնպէս վառուել բորբոքուել էր, որ էլ ուժ չունէր իրան զսպած պահելու. մօր ձեռից առաւ ոսկէ գուշը և հենց այն է, կամենում էր պապակած շրթունքները մօտեցնել նրա պռնկին ու խմել, յանկարծ տան դուռը ճռռալէ բացուեց, ներս մտաւ մի փոշէթաթախ ճամբորդ ու պաղատագին ասեց։ —Քոյրիկ, եղբօրդ սիրոյն, մի խմելու ջուր տուր։

Եղբօրդ անունը լսելով աղջիկն իրա թուքը կուլ տուեց, որ դրանով ծարաւը կոտրի, իսկ ոսկէ գուշը բերանից յետ քաշելով մեկնեց դէպի ծարաւաչոր օտարականը։ Այդ վայրկեանին աւելի մեծ հրաշք պատահեց, յանկարծ գուշի վրայ իրար ետնից փայլփլեցին եօթ խոշոր ադամանդներ, իսկ միջից սկսեց հոսել բաղկի հաստութեամբ զուլալ, ցուրտ ջուր։ Եօթ ադամանդները հետզհետէ բարձրացան դէպի վեր, հասան մինչև երկինք և դարձան այն եօթ լուսաւոր, պայծառ աստղերը, որոնք ժողովրդի բերանում կոչւում են Եօթն աղբերք, երևի ի յիշատակ այն աղջկայ եօթ եղբայրների։

—Ես հաւատացած եմ, աւելացրեց բարի ծերունին, որ ինչպէս մայրն ու աղջիկը վարուեցին, այնպէս կըվարուեն մի ժամանակ բոլոր մարդիկ. կըգայ մի օր, երբ ուրիշների համար ապրել շնչելը մարդկանց կըդառնայ նոյնքան սովորական ու դիւրին, որքան այժմ սովորական ու դիւրին է դարձել նրանց մեռնելը պատերազմների մէջ, որոնց դրդապատճառներին նրանք ամենևին տեղեակ չեն։ Դրա համար հարկաւոր է միայն, որ մարդուս հոգին վեհանայ, լուսազարդուելով մօտենայ աստուածայինին։

Բ. Ս.

---

# Մատենախօսութիւն

## ԳՐԻԳՈՐ ԶՈՀՐԱՊ*)

### ՌՈՄԱՆՏԻԿԸ

Հետաքրքիր է նկատել, որ սկեպտիկութեամբ տոգորուած վերոյիշեալ հերոսի կամ հերոսների կողքին Զոհրապի երկերի մէջ գտնում ենք նաև մարդիկ, որոնց համար սէրը երազուած երջանկութեան անսպառ աղբիւր է, ուղղակի մի եթերային պաշտրանք, որը մարմնական հաճոյքի հետ դրեթէ առնչութիւն չունի։ Տեսէք, «Կատակ»-ի հերոս երաժիշտ Սէֆէրեանը կարծում է, որ իւր աշակերտուհին սիրում է իրեն. ինչո՞ւ, որովհետև այդ աղջիկը ինչ որ պատահական հաճոյախօսութիւն է արել մի անգամ այդ միամիտ ու գեղասէր երիտասարդին։ Սրան թւում է, որ այդ աղջիկը հենց այն ոգին է, որ ծածանւում է իւր նուագի հնչիւնների մէջ։ Այն ինչ կապէս մի բոլորովին տափակ էակ է նա, ոչ աւելի, ոչ պակաս. նա մտածում է հարուստ, դիրք ունեցող փեսացուների մասին միայն։ Միևնոյն է. մեր երաժիշտը երջանիկ է, որովհետև հաւատացած է, որ սիրում է և սիրւում։ Եթէ իրեն այդ տնից նոյնիսկ արտաքսեցին, զրկելով դասերից, այդտեղ էլ ոչ թէ աղջիկն է մեղաւոր, այլ նրա բուրժուա ծնողները միայն։ Ուրեմն մի զոհ էլ այդ աշակերտուհին է. ուստի բաղդի դժնդակութիւնն անգամ նրանց երկուսի ճակատագիրը աւելի բանաստեղծական է դարձնում, և, Սէֆէրեանը հոգով, մտքով աւելի ու աւելի է կապւում այդ ռոմանտիք սէրին։

Իսկ «Տալիլա» պատմուածքի բժիշկը կեանքից հիասթափուած՝ մեկուսանում է և շարունակ կարդում է ռոմանտիկ բանաստեղծների երկերը, որ մխիթարուի։

Այս ակներև ռոմանտիզմը առարկայական՝ օբյեկտիւ բնոյթ չունի, ոչ, այլ նաև հեղինակի անհատական հայեացքին է համապատասխանում որոշ չափով, մի տեսակ անձնական զգացմունքի շեշտ ունի։ Կարող ենք ասել, որ Զոհրապը միաժամանակ երկու հակադիր հայեացքների ենթակայ է՝ սկեպտիկութեան և ռոմանտիզմի։ Այդպէս է նաև նրա արուեստը, որի մէջ գտնում ենք թէ իրապաշտական և թէ ռոմանտիկ տարրեր։ Այդ երկու գծերը զուգահեռաբար ակօսում են նրա թէ գաղափարները և թէ արտայայտութեան ձևը։

Արդէն բացատրեցինք այն հանգամանքները, որոնք նպաստաւոր էին իրապաշտութեան ռէալիզմին, փորձենք պարզաբանել նոյնպէս ռոմանտիզմի ներկայութիւնը։

Գոնէ ես, եթէ բոլորովին էլ կարդացած չլինէի Զոհրապի պատմուածքները, այլ միայն լսած լինէի, որ նա մասնագիտական դպրոցում սովորել է չափագիտութիւն, ապա էլ իրաւաբանութիւն և դարձել է յայտնի փաստաբան. բայց թերթերի մէջ տպել է նաև ոտանաւորներ (տես «Մասիս» շաբաթաթերթը) ու պատմուածքներ, թերևս արդէն մտածէի, որ այդ մարդու մէջ երկու անձնաւորութիւն կան՝ իրապաշտ՝ ռէալիստ և ռոմանտիկ, որովհետև ամեն մի չափագէտի և ամեն մի փաստաբանի համար, ոտանաւորն էլ, վէպն էլ վերջիվերջոյ ռոմանտիզմ է, հենց նաև անկախ այդ գրուածքների բնոյթից։

Բացի այս՝ Գր. Զոհրապը ծնուել է Պոլսում 1861 թուին, այսինքն Սահմանադրութեան շրջանում, երբ այնքան ոգևորութիւն կար մթնոլորտի մէջ, երբ հնչում էր «Արիք, հայկազունք, առաջ ընթանանք» դահլիճներում, երբ Պեշիկթաշլեանի քնքոյշ քնարը փառաբանում էր կոյսի փափուկ մազերը շոյող զեփիւռը։ Ուզում եմ ասել, որ Զոհրապին անմիջապէս նախընթացող սերունդը ռոմանտիկ էր։ Նոյնիսկ Թէրզեանը, այդ երազուն քնարերգուն, նրա ուսուցիչն է եղել։ Հետևաբար մեր հեղինակի կեանքին այդչափ մօտ եղող գրական ուղղութիւնը, ռոմանտիզմը, իւր դրոշմը, որոշ չափով գոնէ, պիտի դնէր նրա երկերի վրայ։

Աւելին կասեմ, բոլոր պոլսեցի հեղինակները քիչ կամ շատ չափով ռոմանտիկ չլինել չեն կարող։ Պոլսի հայ գաղութի համար մեր գաւառները հեռաւոր ու բարբարոս հայրենիքի նման են, մօտաւորապէս մի այնպիսի երկիր, ինչպիսին որ եւրոպացի ռոմանտիկները պատկերացնում էին արևելքը և վայրի կեանքը այն խուլ անկիւնների, ուր դեռ քաղաքակրթութիւնը մուտք չէր գործել։ Ահա մեր գաւառների այդ հեռանկարը պոլսահայ գրականութեան տուել է անհաստատ բնոյթ։ Տաճկական մայրա-

*) Տես «Համբաւաբեր» № 2։

քաղաքը բնականաբար չէր կարող բաւարարութիւն տալ արևմտահայ հեղինակների ոչ գրական և ոչ էլ քաղաքական իդէալներին. Նրանք հենց բնազդով իսկ չէին կարող կպչել տեղական կեանքին և ուսումնասիրել այն, մանաւանդ որ Թիւրք գրաքննիչը թոյլ չէր տալիս ազատ արտայայտելու այդ կեանքի գոնէ մակերևոյթական ճշգրիտ պատկերը. իսկ գաւառացի հեղինակներն ու պանդուխտները շարունակ դէպի Հայաստան էին հրաւիրում նրանց ուշադրութիւնը։ Այստեղից էլ այն անկայուն տրամադրութիւնը, որ ռոմանտիզմին, ինչպէս և պոլսեցիներին է յատուկ։

Եւ յետոյ Պոլիսն ինքնին վերցրած՝ բնակչութեան, հարեմների, վէզիրների, բանտերի, ճիւաղային դաւադրութեանց այն դասական ոստանն է, որ շատ նպաստաւոր է ֆանտաստիկ տարրեր տեսնելու այս աշխարհի չնչին իրերի ու մարդկանց հետ խառն։ Եըլդըզ-Քեօսկը հեքիաթային ղղեակի պէս կանգնած է պարտէզների մէջ, հեռաւոր ծովերից նաւեր են գալիս, փողոցներում ամեն օր կը տեսնէք տարօրինակ մարդիկ, որոնք գոյնզգոյն թութակների պէս խօսում են ինչ որ տարօրինակ լեզուներ և որոնք միջազգային քաղաքի տեսք են տալիս այդ քաղաքին։ Ցանկարծ եզան նման բառաչում է որևէ շոգենաւ և մէկ էլ տեսնես, օրինակի համար, բրազիլիական դրօշակը պարզած՝ հեռացաւ կապոյտ ջրերի մէջ, դէպի ուր։ Ոչ մի տեղ իրականն ու ֆանտաստիկը այնպէս իրար խառնուած չեն, ինչպէս Պոլսում, ուր ծովափին կը տեսնէք ածուխից ու կեղտից սևացած բանուորներ, որոնք հանդիստ ծխելով՝ նայում են իրենց շուրջը մշտական մասկարադի տեսք ունեցող ամբոխին, որի յարափոփոխ խայտաճամուկ տարազի մէջ կը տեսնէք չինական նուրբ բեհեզից սկսած մինչև չարքաշ դերվիշի քուրձը, եւրոպական մերկատի՝ դեկոլտէի կողքին ոչխարենու հաստ մուշտակի մէջ փաթաթուած ջորեպաններ, որոնց կարաւանը հանգչում է խաներում։

Մինչև անգամ ֆրանսական գրականութիւնը, որ սնուցանում է պոլսահայերին, իր պատկերացրած կեանքի հեռաւորութեամբ, օտարութեամբ որոշ ռոմանտիզմ է մտցնում նրանց գրական ըմբռնողութեան մէջ։ Ահա թէ ինչու ֆրանսացի ամենառէալիստ հեղինակն անգամ եթէ ազդի որևէ տաճկահայ գրագէտի վրայ, անպատճառ ձևափոխուած կանդրադառնայ սրա երկերում։ Ինձ թւում է, որ առհասարակ տաճկահայերը ֆրանսացիներից գրական և խոր ազդեցութիւն կրելու համար ոչ միայն աւելի բարեկարգ դպրոցներ պէտք է ունենան, որ իսկապէս ըմբռնեն ֆրանսացիների գաղափարներն ու արուեստն ամբողջ նրբութեամբ, այլև ֆրանսական կեանքը, ինչպէս և լեզուն պէտք է նրանց համար աւելի մօտիկ և աւելի ծանօթ լինէին, քան են։ Այստեղից էլ բղխում է, օրինակի համար այն, որ որ ընդհանրապէս պոլսեցիները գրում են զարդարուն մանուածապատ, մինչդեռ ֆրանսացիք գրում են շատ պայծառ ու պարզ։

Ի հարկէ տաճկերէնի շարահիւսութիւնը նոյնպէս իր քաօսային բնաւորութեամբ որոշ ազդեցութիւն է թողել մեր արևմտահայ բարբառի շարահիւսութեան վրայ։ Միւս կողմից մենք չունենք ազգային դասական հեղինակներ, որ անսայթաք առաջնորդներ հանդիսանան մեր գրողների համար թէ իրենց գաղափարներով և թէ ոգով։

(Շարունակելի)

Մ. Մատէնճեան

---

# Գ Ի Տ Ա Կ Ա Ն

## ՔՈՒԹԷՇԻ ԲԱՐԴՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Քութէշի (Սկարլատինա) բարդութիւնները երևում են՝ թէ թեթև և թէ ծանր տեսակի հիւանդութիւնների ժամանակ, որոնք արտայայտւում են՝ թէ հիւանդութեան ընթացքում թէ վերջը։

Ա) Սկարլատինայի բկացաւը սովորական երևոյթ է և կախում ունի շարանաձև և ընկուզաձև մանրէններից և սովորաբար անցնում է 3-4 օրում։

Այլ է փառային բկացաւը (пленчатая ангина) որը լինում է երկու տեսակի, մէկը ոչ տիֆտերիտային, որ անվնաս է և չի տարածւում դէպի կոկորդը, ուստի և յայտնի է Արուսօյի ասուածքը (աֆօրիզմը) «Սկարլատինան չի սիրում կոկորդը», միւս տեսակը՝ տիֆտերիտային է, որը վտանգաւոր է և տարածւում է դէպի կոկորդը, վերջինս երկրորդ, երրորդ և չորրորդ շաբաթը, երբ հիւանդութիւնը դէպի լաւ է գնում։ Ցանկարծակի հիւանդի ստործնօտեան գեղձերն սկսում են ուռչել, քթից հոսել զարշահոտ հեղուկ, նշագեղձերը ուռչում են, զարկերակի բաբախումը արագ և թոյլ է լինում, երևան են գալիս զառանցանք և այլ ջղային ախտանշանները։ Մորթն սկսում է պաղել, զարկերակը աւելի է թուլանում և հիւանդ երեխան վախճանւում է միևնոյն ձևով, ինչպէս տիֆտերիդի ժամանակ։ Այդ երևոյթը բացատրւում վարակումով շարանաձև տիֆտերիտի ցպաձև միկրոպներով։ Ներկայումս այդ տեսակ ծանր բկացաւը՝ սակաւ է տարածւում, շնորհիւ նախապաշտպանողական և ախտահանական միջոցների և հակատիֆտերիական սրսկումների։

Բ) Երիկամունքների հիւանդութիւն (Нефритъ) խուծփարում միզահանութեան։ Քութէշն առանձին հակումն ունի վնասելու երիկամունքներին, կարող է յարուցանել սպիտակամիզութիւն, թեթև և ծանր երիկամնատապ, արիւնամիզութիւն։ Սպիտակամիզութիւնը հիւանդների կամ կէսի կամ $^{3}/_{4}$ ի մէջ երևում է առաջին օրերին, քութէշային երիկամնատապը 15 օրից ոչ առաջ, երբ չկան ոչ տաքութիւն և ոչ ցաւ։

Քութէշն աւելի աղետաւոր է երիկամների ծանր հիւանդութեամբ, որ յարուցանում է թէ սուր և թէ յարատև հիւանդութիւն որն և արտայայտւում է մի քանի տարուց յետոյ։ Ֆրանսացի բժիշկ Ապերտը 1895 թ. երեխայոց հիւանդանոցում գտել է 20 % նեփրիտի, որոնցից 60 % շատ ծանր։ Հռչակաւոր Արուսօն գրում է, որ քութէշային սպիտակամիզութիւնը (альбуминурія) կարող է աղետալի հետևանքներ ունենալ հիւանդի համար։ Եւ քանի որ այդ բարդութիւնը շատ յաճախ է պատահում, պէտք առանձին ուշադրութեամբ, ինչպէս շատ բժիշկներ առաջարկում են, ամեն օր քննել մէզը և հիւանդին երկար ժամանակ պահել անկողնում։

Քութէշային միզադադար.— (нурія) Երբեմն պատահում է որ հիւանդի միզի քանակը շատ է պակասում, որը շատ վտանգաւոր երևոյթ է համարւում։ Բայց երբեմն մէզը բոլորովին դադարում է. այս ժամանակ երևումէ մի աւելի ծանր երևոյթ, որը կոչւում է միզաթունաւորութիւն (уремія) որը կարող է մահացու դառնալ։ Միզադադարի պատճառը քութէշի թոյնի ազդեցութիւնն է երիկամունքների գործունէութեան վերայ։

Ջրգողութիւն.— Սովորաբար ջրգողութիւնը քութէշի ժամանակ վերագրում են երիկամնատապին (Нефритъ), բայց պատահում են դէպքեր, երբ ջրգողութիւնը երևում է հիւանդութեան վերջերին։ Ջրգողութիւնը նախ երևում է երեսի, յետոյ ամբողջ մարմնի վերայ։ Այդ բարդութիւնը այնքան էլ աղետաւոր չի

համարում, բայց պատահում են դէպքեր, երբ հեղուկը հաւաքւում է կրծքի և որովայնի խոռոչներում և ձայնախորշում (Голосов, изъел)։ Արուսօն բերում է մէկ քանի օրինակներ, երբ կարևոր է եղել օպէրացիայի ենթարկել մեծ շնչափողը։

*Քութէշային ռևմատիզմը*, յաճախ է պատահում, և ռևմատիզմի հետ կապուած սրտի ներքին և արտաքին թաղանթի և կրծքաթաղանթի տապ և այլն։

*Թարախակալում.* (нагноенія) յաճախ է պատահում և առողջանում է շարանաձև միկրոբի ազդեցութեամբ, երևան է գալիս յօդերի թարախային և վզի գեղձերի բորբոքում, վերջին դէպքում հարկաւոր է լինում դիմել օպերացիայի, այլապէս կարող է սարսափելի քայքայում առաջացնել և մէջի մեծ անօթներին հասնելով կարող է պատռել և պատճառել վտանգաւոր արիւնահոսութիւն, երբեմն էլ մահ՝ եթէ իսկոյն վիրաբուժական օգնութիւնը չը հասնի։

*Բորբոքում միջին ականջի* յաճախ է պատահում և այդ հիւանդութիւնը կարօտ է մասնագէտի օգնութեան, որովհետև կարող է բորբոքումը ականջից տարածուել դէպի ուղեղային թաղանթը, ժայռոսկրը (Скалист. кость)։ Պատահում է յաճախ և խլութիւն այդ հիւանդութիւնից յետոյ։

*Նախագուշակումը* Քութէշի ելքը շատ դժուար է, ինչպէս այդ երևաց մեր նկարագրութիւնից։ Մահացութիւնը՝ նայելով համաճարակին՝ պատահում է 4-ից մինչև 36 %-ը։ Մահացութեան ամենամեծ տոկոսը լինում է երեխաների սկզբնական տարիներում։ Քութէշից յառաջ եկած մահացութիւնը՝ զանազան համաճարակների ժամանակը՝ տարբերւում է։ Սոցիալական պայմանները, ազգաբնակութեան մտաւոր ու նիւթական պայմանները մեծ դեր են խաղում այդ երևոյթում։

*Դիագնոզ (Ախտաճանաչումը)* մասամբ որոշւում է՝ այն ախտանշաններով, որոնց մասին խօսուեց այս հիւանդութեան սկզբնական ընթացքի առթիւ։ Ամենագլխաւոր նշաններն են՝ ցանը և բկացաւը։ Ցանը չէ պատահում քթի շրթունքների և ծնօտի վրայ, սակայն լեզուն ունենում է մորու տեսք (малин. языкъ) մարմինը թեփոտում է մեծ շերտերով և յառաջ են գալիս մէկ քանի բնորոշ բարդութիւններ, մանաւանդ երիկամունքի տապ։

*Պատճառը* (Этіологія) Քութէշը համաճարակային հիւանդութիւն է, հարուածում է գլխաւորապէս 6-10 տարեկան երախաներին, ով ունեցել է այդ ախտը, կրկին չի հիւանդանում, սակաւ բացառութեամբ։ Քութէշը վարակիչ է ցանը դուրս տալու, մանաւանդ թեփոտման շրջաններում։ Վարակը կարող է տարածուել ոչ միայն մօտիկ շփմամբ, այլ մեծ հեռաւորութեան վրայ ևս, երբ թեփը հասնի գրքերի, նամակների և ուրիշ առարկաներին։ Բժիշկ Սաննէն (Sanné) հաղորդում է, որ մէկ տիկին Բրիտայնում (Ֆրանսիա) իր աղջկայ հետ նամակ էին ստացել Գերմանեայից, նամակի հեղինակը գրում էր, որ նա քութէշից յետոյ այնպէս էր թեփոտուած, որ նամակի վրայ թափւում էին թեփուկները։ Մայրն ու աղջիկը վարակւում են նամակի մէջոցով, մայրը վախճանւում է, իսկ աղջիկը հազիւ կարողանում է ազատուել։ Մի աղջկայ ծնողները հաւաքում են նրանից թափուած թեփուկները և ուղարկում փոքր եղբօրը, որ վարակւում է։ Ահա թէ որքան զգոյշ պիտի լինել և հիւանդ երեխաներին մինչև թեփոտման վերջանալը չուղարկել դպրոց կամ տանից դուրս։

*Բժ. Բ. Աղասարեան*

# Մ Ա Մ Ո Ւ Լ

## «ԳՈՐԾ» ԱՄՍԱԳԻՐԸ

Պատերազմի երկրորդ տարուայ վերջին, երբ այս կամ այն պատճառներից ձախողեց մեր «ազգային քաղաքականութիւնը», մեր մէջ կամաց կամաց վերակենդանացման նշաններ ցոյց տուեց կուլտուրական շինարար կեանքը։ Իրենց ընդհատուած գործունէութիւնը վերսկսեցին կուլտուրական ընկերութիւնները, վերհրատարակուեցին թերթեր, սկսեց մի փոքրածաւալ, բայց կարևոր աշխատանք։ Իսկ պատերազմի երկրորդ տարին այդ աշխատանքը աւելի մեծ կենդանութիւն է ցոյց տալիս, վերհրատարակւում են մեր գլխաւոր մանկական ամսագիրը ու գեղարուեստական հանդէսը, պէտք է հրատարակուի առաջին անգամ մի գիտական և փիլիսոփայական հանդէս. իսկ ամենանշանակալիցը այդ ամենի մէջ, Բագւում այս տարուանից հրատարակուող «Գործ» մեծածաւալ գրական, գիտական և հասարակական ամսագիրն է, որի թիւ 1-ը արդէն լոյս է տեսել։

Մեր կեանքի ասպարէզում «Գործը» մի ըստ ամենայնի ուշագրաւ երևոյթ է։ Մի բովանդակալից լուրջ ամսագրի կարիքը խիստ մեծ էր, և այդ աննկատելի ու առանց ազդեցութեան չի մնայ։ Բայց նկատի ունենալով հայ ամսագրի պատմութեան անցեալը՝ պէտք է ասենք, որ բաւականին ծանր է և նրա վրայ ընկած պարտականութիւնը։ «Մուրճից» յետոյ, այն էլ այսքան տարի յետոյ շատ է մեծացել մեր ընթերցող հասարակութեան պահանջը։

Կըկարողանա՞յ «Գործը» բաւարարել այդ պահանջին։ Այդ նպատակի համար նա թէ առաւելութիւններ և թէ թերութիւններ ունի։ Նա ոչ մի հոսանքի կամ ուղղութեան բերան՝ օրգան չի ուզում լինել, այլ մի ազատ «Հանդէս», ուր կըկարողանան արտայայտուել տարբեր աշխարհահայեացքի ու կուսակցութեան մարդիկ։ Ամսագրի այլատարր խմբագրութիւնը ինքը զգում է գործի ամբողջ դժուարութիւնը։ Եւ ներկայ պայմաններում մեզ մնում է միայն յաջողութիւն ցանկանալ նրան՝ «Ամուր և հաստատուն տեղ գրաւելու հայ մամուլի օրգանների շարքում»։

Այս ասելու մեզ իրաւունք տալիս է «Գործի» բովանդակութիւնը։ Գեղարուեստական բաժնում աչքի են ընկնում՝ ինքնուրոյն գրուածքներից Զ. Եսայեանի «Վերջին բաժակը», իսկ թարգմանականներից Տ. Յովհաննիսեանի թարգմանութեամբ Սոֆոկլի «Անդիգոնէն»։ Հասարակական բաժնի յօդուածն է «Ազգութեան գաղափարի» մասին և Ե. Ֆրանգեանի յօդուածը Ե. Մախի փիլիսոփայութեան մասին։

Առաջին ինքնուրոյն գրուածքը տաճկահայ յայտնի կին գրող Զ. Եսայեանի գրչին է պատկանում։ «Վերջին բաժակը» մի նուրբ և գեղեցիկ վերլուծութիւն է դժբախտ ամուսնացած կնոջ հոգեբանութեան։ Հեղինակը յաջողել է տալ կնոջ հոգուն միայն յատուկ և առանձնայատուկ ապրումների, յոյզերի ու յոյսերի, տանջանքների ու ներքին ուժգին պայքարների լրիւ գեղարուեստական պատկերը։ Որքան էլ նիւթը հին է, բայց զգում էք ապրումների ճշտութիւնն ու հարազատութիւնը, որովհետև կինն է խօսում կնոջ մասին և ոչ տղամարդը, ինչպէս սովորաբար։ Կինն է միայն իրեն ճիշտ ճանաչում և նա էլ միայն կարող է տալ իր հոգու իսկական պատկերը։ Դժբախտաբար նաև ընդհանուր գրականութեան մէջ կինը մինչև այժմ ներկայացել է գլխաւորապէս այնպէս, ինչպէս որ նա անդրադարձել է տղամարդու հոգեբանութեան մէջ։ Այդ տեսակէտից «Վերջին բաժակը» մի սիրուն և հետաքրքրական գեղարուեստական փաստաթուղթ է կնոջ հոգեբանութեան ճանաչողութեան համար։

Երկրորդ ինքնուրոյն գրուածքը նոյնպէս տաճկահայի է պատկանում, այս էլ գործի «բնորոշ կողմերից մէկն է մէջկուսակցական լինելով՝ սա առաջին անգամ այս չափերով հայութեան երկու հատուածների արտայայտիչն է հանդիսանում։

Տաճկահայ երիտասարդ գրող Թորգոմեանի «Լաչակս գլխուդ ըլլայ թող...» պատմուածքը մի կենդանի պատկեր է վերջին գաղթականութեան կեանքից, հեղինակը անմիջօրէն ապրել և զգացել է այս չափազանց իրական, կենդանի գոյներով ու գծերով ինքնին հարուստ պատկերը, բայց «մտածուած» և մա-

սամբ էլ բանագրօսիկ «իդէայով» ղեկավար գաղափարով թուլացրել է գրուածքի գեղարուեստական արժէքը։

Վանի գաղթն է. «Յարութիւն ու Ռեհանն էլ են փախչում իրենց մանուկների հետ. խուճապի և յարձակման ժամին մէկ երեխան մնում է գետի միւս ափին, թշնամու գնդակի տակ… ծնողներից միայն Ռեհանն է սիրտ անում գտնել զաւակին և ընկնում է՝ հասնելով իր նպատակին. «Կինը երբ մայրական վառուած զգացումին տիրապետութեան ներքև կը գտնուի, ատակ է այնպիսի գործերու, որոնք տղամարդու ույժերէն վեր են», ասում է հեղինակը և չպէտք է «այդ» ասէր։ Հայկական գեղարուեստական պատկերացումն ինքը պէտք է «ասի» հեղինակի զգացածն ու մտածածը, կեանքի ճիշդ և հարազատ արտայայտութեամբ։

Ամսագրի բանաստեղծութեան բաժինը բաւական թոյլ է, չնայած որ բանաստեղծութիւններ ունեն մեր ամենանշանաւոր բանաստեղծները։ Թարգմանականներից այստեղ աչքի են ընկնում Շ. Բոդլերի 11 արձակ քերթուածների պօէմների թարգմանութիւնը Վ. Տէրեանի

Գեղարուեստական բաժնի նշանաւոր թարգմանութիւնը Սոֆոկլի «Անդիգոնէն» է մեր ականաւոր թարգմանիչ Տ. Յովհաննիսեանի սիրուն թարգմանութեամբ։ Թէև թարգմանութիւնը բնագրից չէ կատարուած, այլ հայերէն-գրաբար և ռուսերէն ու ֆրանսերէն թարգմանութիւններից համեմատելով, բայց թարգմանիչը հասել է իր նպատակին։ «Անդիգոնէի» այս արձակ և և համեմատական թարգմանութիւնը անհրաժեշտ է հենց նրա համար, որ միայն հայերէն և «աշխարհաբար գիտցող հայ ընթերցողն էլ հնարաւորութիւն ունենայ ծանօթանալու համամարդկային գրականութեան այդ մարգարտին»… «Անտիգոնէն» մի որոշ արժէքով հարստացնում է մեր գրականութիւնը։ Ցանկալի է, որ դասականների միւս գլուխ-գործոցներն էլ գէթ այնպէս թարգմանուէին։

Վ. Խորենի

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

## Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ ԿԱՐՍԻ ՈՐԲԱՆՈՑԻ ՆՈՒԻՐԱՏՈՒՆԵՐԻ ՑԱՆԿԸ

Հոկտեմբեր-դեկտեմբեր

Մ. Յարութիւնեան 40 ռ. տ Արմ. Գէորգեան 50 ռ. տ. Շուշ. Ջառահեան 50 ռ. Մար. Աստուրեան 4 ռ. Արապաջեան Եղբարք 50 ռ. Կար. Էլպէկեան 10 ռ. Պետ. Աղապապեան 25 ռ. Խաչ. Տէր-Աւետիքեանի մահուան եօթնակին հաւաքուած 36 ռ. տ. Հայկ Պարսամեան 10 ռ. Մխճեան Ս.-ի դստեր մահուանը հանգանակուած 40 ռ. Օհ. Տէր-Ռափայելեան 100 ռ. Վռամշապուհ Մաւէլեան 25 ռ. տ. Ա. Գազանճեան 50 ռ. Գարեգին Տէր-Առաքելեան 50 ռ. Յար. Ստեփանեան 22 ռ. 50 կ. Արմենակ Ռաշմաճեան 50 ռ. Եղբայրք Տէր-Մինասեանները 400 ռ. Վար Մկրտիչեան 25 ռ. Յար. Զուանճեան 20 ռ. Պապոյեանի դստեր պսակադրութ. հաւաքուած 39 ռ. Աշոտ Վարդանեան 20 ռ. Յար. Խանչեանի և Օր. Տիգրանուհու նշանդրէքին հաւաքուած 66 ռ. 50 կ. Օր. Վարդուհի Զօրանեանցի նշանդրէքին հաւաքուած 80 ռ. ընդամենը 1263 ռ.

# Յայտարարութիւններ